





«...ՔԱՆԻ ՈՐ ՀԱՅԻ ՇՈՒՆՉՆ ՈՒ ԼԵԶՈՒՆ ԿԱ, Ե՞ՐԲ ՆՐԱՆՑ ՄՏՔԻՑ ԿԵՐԹԱ ԷՆ ԱՎԵՏԱԼԻ ՍՀԱԹԸ, ԵՐԲ ՌՈՒՍԱԿԱՆ ԶՈՐՔԵՐԸ ՄՏԱՆ ԵՐԵՎԱՆ ԵՎ ՀԱՅՈՑ ԱՇԽԱՐՀԻ ԱԶԱՏՈՒԹՅԱՆ ՏՈՆ ԿԱՏԱՐՎԵՑ...»

ԽԱՉԱՏՈՒՐ ԱԲՈՎՅԱՆ

## ԾԱՆՐ ԳԵՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Երբեմնի անկախ ու հզոր Հայաստանը, որի հետ հաշվի էին նստել Հին Հունաստանն ու Հին Հռոմը, Աքեմենյան և Սասանյան Պարսկաստանը, որը քաղաքակրթության հնագույն օրրաններից մեկն էր եղել, հետամնաց ցեղերի տևական տիրապետության, դաժան հարկահանության, թալանի և ազգային ճնշման ներքո զրկվել էր պատմական օրինաչափ զարգացման հնարավորությունից:

XIV դ. երկիրը նախ ոտնակոխ եղավ Չինգիզ խանի ժառանգների՝ Ջելաիրյանների և Չոբանյանների միջև բռնկված երկարատև պատերազմների ժամանակ, ապա ենթարկվեց Լենկթեմուրի արշավանքներին: Լենկթեմուրի կատարած վայրագությունների մասին չափազանց հիշատակարան է թողել Գրիգոր Խլաթեցին: Թեմուրի հրամանով այնքան մարդ էին նետել Վանա բերդից, որ այնուհետև նետվածը ընկնելով դիակների կույտի վրա՝ այլևս չէր մահանում:

XV դ. Հայաստանը Կարա-Կոյունլու, ապա Աղ-Կո-

# ԴԵՊԻ ՌՈՒՍԱՍՏԱՆ




Նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ

յունլու քոչվոր թուրքմենների տիրապետության տակ էր: Մեծ թվով հայեր գաղթեցին Վրաստան, Սիրիա, Ղրիմ, Լեհաստան և այլուր: XVI դ. երկիրը թատերաբեմ դարձավ հզորացած և Ասիայում գերիշխանության ձգտող Օսմանյան Թուրքիայի և Սեֆյան Պարսկաստանի միջև: Անասելի ավերածություններով, բռնագաղթերով և դավանափոխություններով ուղեկցվող այդ երկարատև պայքարը ավարտվեց 1639 թ. կնքված թուրք-իրանական հաշտությամբ, որով Հայաստանը բաժանվեց նրանց միջև: Արևելյան Հայաստանը բաժին հասավ Պարսկաստանին, Արևմտյանը՝ Թուրքիային:

Հայոց բազմամարդ և վաճառաշատ քաղաքները դատարկվում էին, վերածվում ավերակների կույտի, ոչնչանում էին նյութական և հոգևոր մշակույթի հուշարձանները, կրթական, գիտության ու արվեստի օջախները: Ազգային լեզուն, դավանանքն ու ավանդույթները պահպանվում էին մեծ դժվարությամբ, հաճախ կյանքի գնով: Այդ դարերում Հայաստանով անցած եվրոպացի առևտրականներն ու դիվանագետ-



Բաբկեն Քոլոզյան — ՀԱՐԿԻ ՓՈԽԱՐԵՆ



Գուրգեն Ղուկասյան, Գրիգոր Ակիզյան — «ՀՈՒՅՍԻ ՇՈՂ ՀՅՈՒՍԻՍԻՑ» (Իսրայել Օրին և Մինաս վարդապետը Պետրոս Առաջինի մոտ)

ները սաստիկ տխուր նկարագրություններ են թողել իրենց ուղեգրություններում: Հայ աշխատավորը ծառա էր իր հայրենիքում, կիսաքաղց՝ իր մշակած դաշտերում:

## ԽԱԲՈՒՍԻԿ ՀՈՒՅՍԵՐ

Հայ ժողովրդի հոգում չէր մարում ազատության, անկախ հայրենիքի տենչը: Բռնության ու խավարի մեջ էլ, գեղջկական խրճիթներում, վանքերի ցուրտ պատերի և տարագրության մեջ ծնվում, կոփվում էին հայրենիքի սիրով վառվող, պայքարի պատրաստ գործիչներ: Փրկության ուղիների որոնումը նրանց տարավ Արևմտյան Եվրոպա: 1547 թ. Հայոց կաթողիկոս Ստեփանոս Սալմաստեցին օգնություն խնդրեց Հուլիոս Երրորդ պապից: 1663 թ. Կիլիկիայի կաթողիկոս Խաչատուր Գաղատացին օգնություն խնդրեց Ֆրանսիայի Լյուդովիկոս Տասնչորսերորդ թագավորից: Էջմիածնի կաթողիկոս Հակոբ Ջուղայեցին դիմեց Ալեքսանդր Երրորդ պապին և Լեհաստանի թագավոր Յան Սոբեցկուն: Հակոբ Ջուղայեցու գլխավորությամբ Եվրոպա մեկնած պատվիրակության կազմում էր նաև Իսրայել Օրին: Կաթողիկոսի մահից հետո պատվիրակությունը ցրվեց, բայց պատանի Օրին մնաց Եվրոպայում, կամավոր կռվեց ֆրանսիական բանակում, հետո ծառայեց Հռենոսյան Պֆալցի կուրֆյուրստ Հովհան Վիլհելմի պալատում: Շահելով կուրֆյուրստի վստահությունն ու համակրանքը, Օրին նրանից խնդրեց ձեռնամուխ լինել Հայաստանի ազատագրման գործին: Օրին շատ ջանքեր թափեց, շատերին դիմեց, շատ խոստումներ ստացավ նաև կուրֆյուրստի դաշնակիցներից՝ Գերմանիայի Լեոպոլդ կայսրից, Հռոմի պապից, Տոսկանայի մեծ դքսից, եվրոպական տերությունները խոստացան, բայց և շուտով մոռացան իրենց խոստումները:

Օրին հասկացավ, որ նրանց համար Հայաստանը շատ փոքր է և շատ է հեռու Եվրոպայից:

## ՀՈՒՅՍԻ ՇՈՂ ՀՅՈՒՍԻՍԻՑ

Ռուս-հայկական հարաբերությունները ավելի վաղ էին սկսվել և հիմնականում կապված էին Սպահանի հայ առևտրականների գործունեության հետ: 1667 և 1671 թթ. Մոսկվա ժամանած Գրիգոր Լուսիկենցը արտոնություններ էր ձեռք բերել հայ առևտրականների համար:

1701 թ. Իսրայել Օրին և Մինաս Վարդապետը ժամանեցին Մոսկվա, Պետրոս Առաջինը ընդառաջ գնաց՝ ունկնդրեց նրանց: Նախապատրաստվելով պատերազմի Պարսկաստանի դեմ, Պետրոս Առաջինը մեծ հույսեր էր կապում հայերի և վրացիների աջակցության հետ: Օրին վերադարձավ Հայաստան, ազատագրության հույս վառեց հայերի սրտում:

1722 թ. Պետրոս Առաջինը սկսեց «կասպիական» արշավանքը: Ռուսական զորքերը գրավեցին Կասպից ծովի առափնյա շրջանները: Հայաստանում ազատագրական պայքար բռնկվեց: Ղարաբաղում Ավան Յուզբաշու, Սյունիքում և Ղափանում՝ Թորոսի, Պապի, Տեր-Ավետիսի, Դավիթ Բեկի և Մխիթար սպարապետի գլխավորությամբ հայերը դուրս քշեցին խաներին ու բեկերին և իրենց հայտարարեցին անկախ: Սակայն 1723 թ. Անդրկովկաս մտան թուրքական բանակները: Ռուսական բանակները պատրաստ չլինելով նոր պատերազմի, ստիպված դադարեցրին առաջխաղացումը: Հայերը կենքով դիմավորեցին թուրքական բանակներին: Գանձակի, Կարբիի, Լոռու և Երևանի պաշտպանությունների, Հալիձորի և Մեղրիի ճակատամարտերի ժամանակ ցուցաբերած քաջությունն ու անձնազոհությունը, որպես հերոսության անկրկնելի դրվագներ, հավերժացան հայոց պատմության էջերում:



Արա Բեքարյան — ՃԱԿԱՏԱՄԱՐՏ ԴԱՎԻԹ-ԲԵԿԻ ԳԼԽԱՎՈՐՈՒԹՅԱՄԲ



Պետրոս Առաջինի և հայերի միջև հաստատված բարեկամությունն ու համագործակցությունը Հայաստանին ազատագրում չպարգևեց, բայց երկու ազգերը կապվեցին անխզելի հարաբերություններով: Ռուսաստանի հարավում ստեղծվեցին նոր հայկական գաղթավայրեր՝ Ղզլարը, Մոզդոկը, Սուրբ Խաչը: Աճեցին Մոսկվայի և Աստրախանի գաղթօջախները: Գաղթավայրերում հայերը ստացան ներքին ինքնավարության, սեփական դատական մարմին ունենալու իրավունք, բացվեցին դպրոցներ; 1781 թ. Գրիգոր Խալդարյանի և Հարություն Արղությանի ջանքերով Պետերբուրգում հիմնադրվեց հայկական տպարան: 1720-ական թվականների վերջին ռուսական բանակի շարքերում կազմվեց Հայկական էսկադրոն անունը ստացած զորամիավորումը Պետրոս դի Սարգիս Գիլանենցի գլխավորությամբ: Վերջինիս մահից հետո նրան փոխարինեց Աղազար դի Խաչիկը (Լազար Խրիստաֆորով), որին 1734 թ. շնորհվեց գեներալ-մայորի կոչում: Հայկական էսկադրոնի կազմում կռվում էին 600—700 մարտիկ:



ՀՈՎՍԵՓ ԷՄԻՆ



Տարագրության մեջ գտնըվող հայերը նույնպես Հայաստանի փրկությունը կապում էին Ռուսաստանի հետ:

1751 թ. քսանհինգամյա Հովսեփ Էմինը Կալկաթայից մեկնեց Եվրոպա: Նա սովորեց Վուլվիչի (Անգլիա) ռազմական ակադեմիայում, մասնակցեց յոթնամյա պատերազմին, բայց նրա միակ փափագը Հայաստանի ազատագրումն էր: 1759 թ. նա ժամանեց Հայաստան և տեղում համոզվեց, որ միայն Ռուսաստանն է ընդունակ ազատագրելու Հայաստանը: Նա մեկնեց Պետերբուրգ: Հովսեփ Էմինի ծրագիրն էր հայերից և վրացիներից կազմել լավ զինված բանակ և Ռուսաստանի օգնությամբ ազատագրել Հայաստանն ու Վրաստանը: Չհասնելով իր ծրագրի իրականացմանը, նա վերադարձավ Հնդկաստան, որտեղ Հայաստանի ազատագրման ծրագրեր էին կազմում նաև Մադրաս քաղաքում բնակվող մի խումբ հայեր՝ Շահամիր, Հակոբ և Եղիազար Շահամիրյանները, Մովսես Բաղրամյանը, Գրիգոր Խոջաջանյանը: 1771 թ. նրանք հիմնադրեցին տպարան, որտեղ շուտով հրատարակվեց Մովսես Բաղրամյանի «Նոր տետրակ, որ կոչի յորդորակ» գիրքը: Այդ քաղաքական-հրապարակախոսական գրքում արտահայտված էր Հայաստանի ազատագրման մադրասականների ծրագիրը: Նրանք ևս Հայաստանի ազատագրումը կապում էին հայ-վրացական ապստամբության և Ռուսաստանի ռազմական աջակցության հետ: «Նոր տետրակ, որ կոչի յորդորակ»-ը 1786 թ. ռուսերեն թարգմանությամբ հրատարակվեց Պետերբուրգում:



1804 թ. սկսվեց ռուս-պարսկական առաջին պատերազմը: Վրաստանն արդեն 1801 թ. միացել էր Ռուսաստանին: Հայերը խանդավառությամբ դիմավորեցին 1804 թ. մայիսին Հայաստան մտած ռուսական զորքերին: Հունիսի 10-ին ռուսական բանակը հայերի օգնությամբ Ախուրյան գետի ափին պարտության մատնեց պարսիկներին: Գեներալ Ցիցիանովի հրամանատարության տակ գործող ռուսական բանակը Գյումրիից շարժվեց դեպի Երևան: Հունիսի 25-ին գրավվեց Քանաքեռը: Հունիսի 29-ի գիշերը Հրազդանի ափին բռնկված մարտում պարտության մատնելով թագաժառանգ Աբաս Միրզայի բանակին, ռուսական զորքերը պաշարեցին Երևանի բերդը: Սակայն Երևանի բերդը լավ էր պաշտպանված: Պարսկական ուժերը համախմբվելով հակահարձակումներ սկսեցին գործել: Սեպտեմբերի 3-ին ռուսական բանակը ստիպված եղավ դադարեցնել պաշարումը և նահանջեց Թիֆլիս: Ռուսաստանին միացան Ղարաբաղն ու Շորագյալը (Արևելյան Շիրակը): 1808 թ. նոյեմբերին ռուսական զորքերը ֆելդմարշալ Գուդովիչի գլխավորությամբ կրկին պաշարեցին Երևանի բերդը, բայց այս անգամ էլ չհաջողվեց գրավել այն: Շուտով սրվեցին ռուս-ֆրանսիական հարաբերությունները և Ռուսաստանը 1813 թ. Գյուլիստանում ստիպված հաշտություն կնքեց Պարսկաստանի հետ:



Ի. Ֆ. ՊԱՍԿԵՎԻՉ



1804—1813 թթ. ռուս-պարսկական պատերազմի ժամանակ ռուսական զորքերին մեծ օգնություն էին ցուցաբերում հայ ռազմիկները: Պարսկական զորքերի դեմ կռվում էին Ռոստոմի, Մելիք-Աբովի հեծյալ ջոկատները, Գրիգոր Մանուչարյանի 500-հոգանոց աշխարհազորային ջոկատը: Գ. Մանուչարյանը պարգևատրվեց Գեորգիևյան խաչով, Վլադիմիրի ու Աննայի շքանշաններով: Աչքի ընկան հայ սուրհանդակներ Հարություն Բաբիջանյանը, Աթաբեկյան եղբայրները և ուրիշներ:

Հայերը ակտիվ մասնակցություն ունեցան նաև 1812 թ. Հայրենական պատերազմին: Նապոլեոնի բանակների դեմ մղված մարտերում աչքի ընկան սպաներ Վ. Մադաթովը, Բ. Բեհբութովը, Դ. Դելյանովը, Աշխարումովը, Մելիք-Օսիպովը:



1813 թ. Գյուլիստանում կնքված պայմանագիրը ժամանակավոր հաշտություն էր: 1826 թ. ամռանը անգլիական ռազմախորհրդատուների մշակած Անդրկովկասը նվաճելու ռազմաստրատեգիական ծրագրով, Անդրկովկաս ներխուժեց Աբաս Միրզայի 60-հազարանոց բանակը: Սկսվեց ռուս-պարսկական երկրորդ պատերազմը:

Պարսկական զորքերի առաջին հարվածն իրենց վրա ընդունեցին ղարաբաղցիները: Ամրանալով Շուշիի բերդում, նրանք ռուսական փոքրիկ կայազորի հետ 47 օր ամրոցի պատերի տակ գամեցին Աբաս Միրզայի բանակը: Անդրկովկասում ցրված ռուսական զորամասերը համախմբվեցին և գրոհի անցան պարսկական բանակի դեմ: Հաջողությամբ էին գործում գեներալներ Երմոլովի, Պասկևիչի, Դենիս Դավիդովի, այդ թվում նաև հայազգի Վ. Մադաթովի զորաբանակները: Վերջինս 1826 թ. սեպտեմբերի 3-ին Շամքորի գետի ափին իր 2-հազարանոց զորագնդով ջախջախեց Ամիրխանի 10-հազարանոց բանակը: Ռուսական բանակի զորամիավորումներում կռվում էին հայ աշխարհազորային ջոկատներ: Գեներալ Դենիս Դավիդովի զորագնդի կազմում էր Մարտիրոս Վեքիլյանի հեծյալ ջոկատը, որը հատկապես աչքի ընկավ Գյումրիի մոտ մղված մարտերում: 1827 թ. մայիսին Թիֆլիսից գործող բանակ մեկնեց 117 ռազմիկներից բաղկացած հայկական առաջին կամավորական գումարտակը՝ կապիտան Սումբատովի գլխավորությամբ: Շուտով ռազմաճակատ մեկնեցին հայկական երկրորդ և երրորդ գումարտակները: Պարսիկների դեմ կռվում էին նաև վրացի աշխարհազորայիններ: 1827 թ. օգոստոսի 17-ին տեղի ունեցած Օշականի ճակատամարտում, որն ավարտվեց ռուսական բանակի հաղթությամբ, մեծ դեր խաղացին հայ և վրացի աշխարհազորայինները:



ՀԱՅԿԱԿԱՆ ԿԱՄԱՎՈՐԱԿԱՆ ԴՈՒՄԱՐՏԱԿԻ ԶԻՆԱԴՐՈՇ (1827 թ.)



Պարսկական լծից Արևելյան Հայաստանի ազատագրման համար մղված մարտերում մեծ դեր խաղացին Կովկաս աքսորված դեկաբրիստ սպաներն ու դեկաբրիստների ապստամբությանը մասնակցած շարքային զինվորները: Հայաստանի ազատագրման համար մարտնչում էին մոտ 3 հազար դեկաբրիստներ: Երևանի և մյուս բերդերի գրավման ժամանակ ինժեներասակրային աշխատանքները, գետանցների ու կամուրջների պատրաստումը և ամրությունների նախագծումը և կառուցումը գլխավորում էր դեկաբրիստ Մ. Ի. Պուշչինը: Քաջաբար էին կռվում դեկաբրիստներ Ն. Ն. Դեպրերադովիչը, Ե. Ե. Լաչինովը, Լ. Ա. Մոլչանովը, Ա. Ս. Գանգեբլովը, Ֆ. Գ. Վիշնևսկին, Ա. Ե. Ռինկևիչը, Բեստուժև և Կոնովիցին եղբայրները և շատ ուրիշներ: Անգնահատելի է նրանց բոլորի դերը Արևելյան Հայաստանի ազատագրման գործում: Արհամարհելով իրենց նկատմամբ ռեակցիոն հրամանատարության անվստահությունն ու հետապնդումները, նրանք անձնվիրաբար կռվեցին հայկական հողում:



Օշականի ճակատամարտում կրած պարտությունից հետո Աբաս Միրզան բռնեց փախուստի ճանապարհը: Պարսկական բանակն անցավ Արաքսի աջ ափը: 1827 թ. սեպտեմբերի 25-ին սկսվեց Երևանի բերդի երրորդ՝ վերջին գրոհը: Վաղ առավոտյան ռուսական ծանր հրետանին սկսեց ռմբակոծությունը: Երևանի Հասան խանն ուներ 6 հազար զինվոր, 50-ից ավելի թնդանոթ և կատաղի դիմադրում էր: Ռուսական հետևակը մոտեցավ պարիսպներին, սեղմեց պաշարման օղակը: Հինգ օր հինգ գիշեր չէր դադարում հրետա-





*Ռուբո — ԵՐԵՎԱՆԻ ԲԵՐԴԱՊԱՀ ԶՈՐՔԻ ԱՆՁՆԱՏՐՈՒԹՅՈՒՆԸ*

նային կրակը: Պարսիկների դեմ ապստամբեցին ուժով բերդի պարիսպներից ներս քշված ավելի քան 10 հազար հայերը: Հոկտեմբերի 1-ին բերդի հարավ-արևելյան պարսպի փլվածքի միջով Երևան մտան փլբ-գվարդիական, իսկ հյուսիսային դարպասներից՝ Կրասովսկու զորամասերը: Պարսիկներն անձնատուր եղան: Հոկտեմբերի 6-ին տեղի ունեցավ Երևանի գրավման պաշտոնական տոնակատարությունը: Հայաստանը ազատված էր պարսկական դարավոր ստրկությունից:

## ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՀԵՏ

Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին շրջադարձային եղավ հայ ժողովրդի կյանքում: Միանգամայն իրավացի էր Ֆ. Էնգելսի արտահայտած միտքը, թե «Ռուսաստանը իրոք առաջադիմական դեր է խաղում Արևելքի նկատմամբ...» Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորումը ժամանակին դրական և առաջադիմական երևույթ են համարել նաև Հովհաննես Թումանյանը, Ֆրիտյոֆ Նանսենը և շատ ուրիշներ:

Ռուսաստանի կազմի մեջ մտնելով՝ Հայաստանի առջև ինչպես տնտեսական, այնպես էլ մշակութային զարգացման ավելի լայն հեռանկարներ բացվեցին: Սկսեց վերանալ տարբեր նահանգների ինքնապարփակվածությունը, քաղաքներում աշխուժացան առևտուրն ու արդյունագործությունը: Արդեն 1806 թ. Աստրախանում բացվել էր Աղաբաբյան դպրոցը, 1815 թ. Մոսկվայում՝ Լազարյան ճեմարանը, 1824 թ. Թիֆլիսում՝ Ներսիսյան դպրոցը: 1832 թ. բացվեց Երևանի գավառական, 1837 թ. թեմական դպրոցը, 1838 թ.՝ Շուշիի թեմականը, 1850 թ. ո. Հռիփսիմեի, 1866 թ.՝ Գայանյան օրիորդաց դպրոցները, 1874 թ.՝ Էջմիածնի Գևորգյան ճեմարանը: Հրատարակվեցին հայերեն դասագրքեր, քերականության, պատմության ձեռնարկներ: Մոսկվայի և Պետերբուրգի բարձրագույն ուսումնական հաստատություններում ձևավորվեց հայ ազգային մտավորականություն, որն իր ուսերին առավ հայ ժողովրդի ճակատագրի հոգսը: Կյանք ստացան



1833 Թ. ՀԱՍՏԱՏՎԱԾ ԵՐԵՎԱՆԻ ԳԵՐԲԸ

բազմաթիվ պարբերականներ, այդ թվում առաջադիմական «Հյուսիսափայլն» ու «Կռունկ հայոց աշխարհին»: Ծնվեց նոր, աշխարհաբար գրականություն: Զարգացավ նոր գիտություն՝ հայագիտությունը: Թատերական ներկայացումները դարձան հայկական կենցաղի անբաժանելի մասը: 1874 թ. Երևանում հիմնադրվեց առաջին տպարանը:



Ս. ՀՌԻՓՍԻՄԵԻ ՕՐԻՈՐԴԱՑ ԳԻՄՆԱԶԻԱՅԻ ՇԵՆՔԸ



Միանալով Ռուսաստանին, հայ ժողովուրդն իր բախտը մեկընդմիշտ կապեց ռուս ժողովրդի հետ, կի–



# ՆՈՐՎԵԳԱՑԻ ՄԵԾ ԲԵՎԵՌԱԽՈՒՅԶՆ ՈՒ ՀՈՒՄԱՆԻՍՏԸ

Ֆրիտյոֆ Նանսենը ծնվել է 1861 թ. Քրիստիանայի (Օսլո) մերձակայքում գտնվող Ստուռ-Ֆրյուն հարուստ կալվածքում: 1882 թ. նա ավարտեց Քրիստիանայի համալսարանը, անմիջապես էլ ստացավ կենդանաբանության դոկտորի գիտական աստիճան: Շնորհալի և աշխատասեր երիտասարդի առաջ բաց էին կյանքի բոլոր ուղիները, բայց նա ընտրեց ամենադժվարինը՝ վտանգներով լի հայտնագործությունների, մարդկային իմացության և փորձի սահմանների ընդգրկումից դուրս մնացած բնության գաղտնիքների ուսումնասիրման ուղին: 1888 թ. Նանսենը երեք այլ քաջարի նորվեգացիների հետ, դահուկներով և սահնակներով հատեց մինչ այդ անանցանելի համարվող Գրենլանդիայի սառցե բարձրավանդակը: 1893 թ. Նանսենը «Ֆրամ» (Առաջ) նավով ձեռնամուխ եղավ Հյուսիսային բևեռի հաղթահարմանը: Ուսումնասիրելով Հյուսիսային բևեռ կատարած նախկին ճանապարհորդությունների պատմությունը, Նանսենը եզրակացրել էր, որ ճանապարհորդներին ուղուց շեղել է արևելքից արևմուտք հոսող սառցային հոսանքը: Բոլորը լողացել են հոսանքին հակառակ, իսկ ինքը կլողա հոսանքի ուղղությամբ... Շատ հեղինակություններ Նանսենի համարձակ ծրագիրն անվանեցին «անմիտ», ոմանք էլ անգամ շտապեցին սգալ «անմիտների անխուսափելի կորուստը», «նախօրոք հայտնել իրենց ցավակցությունը»: Մոտ երկու տարի «Ֆրամը» դեգերեց

սեց նրա ուրախությունն ու ցավը: Հայ ժողովրդի լավագույն ներկայացուցիչները կանգնեցին ցարիզմի դեմ պայքարի ելած ռուս հեղափոխականների կողքին, նրանց հետ մարտնչեցին ազգերի իրավահավասարության, մարդու իրավունքների, շահագործման վերացման և ազատության համար: 1850—60-ական թթ. հանդես եկավ ռուս հեղափոխական-դեմոկրատներ Ն. Չերնիշևսկու, Ա. Գերցենի և Ն. Դոբրոլյուբովի զինակից Միքայել Նալբանդյանը, որը հայ ժողովրդի վերջնական ազատությունը կապում էր ռուսական հեղափոխական շարժումների հաղթանակի հետ: Ռուսական հեղափոխությունը, գտնում էր նա, այն միակ ուղին է, որով գնալու է հայ ժողովուրդը:

Այդպես էլ եղավ: Հայ ժողովրդի դարավոր ազատագրական պայքարն ավարտվեց նրանով, որ 1920 թ. նոյեմբերի 29-ին Սովետական Ռուսաստանի անշահախնդիր օգնությամբ Հայաստանում սովետական իշխանություն հաստատվեց: Սովետական կարգերի



Ն. ՉԵՐՆԻՇԵՎՍԿԻ



Մ. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

հաստատումով հայ ժողովուրդը վերջապես պետական անկախություն ձեռք բերեց: Սկսվեց հայ ժողովրդի ազգային վերածնունդը:

սառցաբեկորների մեջ, մնաց սառցե արգելքներում, այնուամենայնիվ սառուցյա հոսանքը խիզախ ճանապարհորդներին հասցրեց հյուսիսային լայնության 84°5 զուգահեռականը: Հույսը կտրելով «Ֆրամով» ավելին հասնելուց, 1895 թ. մարտի 14-ին Նանսենը լքեց նավը և Յա. Յոհանսենի ուղեկցությամբ ոտքով շարունակեց ճանապարհը: Գերմարդկային ճիգերով և ահավոր զրկանքներով հասնելով մինչև 86°14 զուգահեռականը, Նանսենը և Յոհանսենը բռնեցին վերադարձի ճամփան: Ողջ աշխարհը հիացմունքով ընդունեց, որ Նանսենի «անմիտ» ծրագիրն իրականացել է, ընդ որում բացառիկ հաջողությամբ, առանց մարդկային կորստի:

Նորվեգացի մեծ ճանապարհորդ ու գիտնական Ֆրիտյոֆ Նանսենի անունը մեզ՝ հայերիս համար թանկ է նաև Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին տարագրության դատապարտված բազմահազար արևմտահայերի նկատմամբ նրա ցուցաբերած մտահոգությամբ, օգնելու իրական, անկեղծ ձգտումով: Լինելով Ազգերի լիգայի գաղթականական գործերի գերագույն կոմիսար, Նանսենը կազմեց տարագիր հայերի օգնության կոնկրետ ծրագիր: Երկրե-երկիր թափառող նախկին թուրքահպատակ հայերը Նանսենի աջակցությամբ ստացան միջազգային անձնագրեր (այսպես կոչված «Նանսենյան անձնագրեր»), որոնք նրանց հնարավորություն տվին հանգրվանել այս կամ այն երկրում, դառնալ տվյալ երկրի օրինական քաղաքացին, ունենալ բնակարան ու աշխատանք: Նանսենը մեծ եռանդ ներդրեց սփյուռքահայության հայրենադարձության կազմակերպման գործում: 1925 թ. հունիսին նա ժամանեց Հայաստան, ականատես եղավ վերածնվող ժողովրդի զարթոնքին: «Հայ ժողովրդի ջանասիրությունը և եռանդն այժմյան խաղաղ պայմաններում մեծ գործեր կարող են կատարել»,— ներկա գտնվելով Շիրակի ջրանցքի բացման արարողությանը, ասաց նա: Վերադառնալով Ժնև, Նանսենը Ազգերի լիգայում հայտարարեց, որ տարագիր հայերի տեղավորման միակ վայրը Հայաստանն է: Ներգաղթի կազմակերպումը և տարագիր հայերին Հայաստանում վերաբնակեցնելը մեծ ծախսեր էին պահանջում:

Անհրաժեշտ գումարը ձեռք բերելու համար Նանսենը Ազգերի լիգայից պահանջում էր բռնագրավել այն 5 միլիոն ստեռլինգը, որը թուրքական կառավարությունը կողոպտել էր արևմտահայերից և կամ եվրոպական տերությունները ծախսերը վերցնեն իրենց վրա այն պատասխանատվության դիմաց, որ կրում են նրանք հայ ժողովրդին հասած դժբախտությունների համար: Նանսենը դիմում էր բարեգործական ընկերություններին, հանգանակություններ հավաքում:

Ազգերի լիգան մի քանի տարի քննարկում էր Նանսենի ծրագիրը: Այդ ընթացքում շատ սփոփիչ ճառեր արտասանվեցին հայ ժողովրդի հասցեին, շատ առաջարկություններ եղան, բայց այդպես էլ հայ տարագիրները չստացան հայրենադարձության համար անհրաժեշտ նյութական օգնություն: Անգամ Նանսենը, որը հաղթահարել էր անհաղթահարելին, համառությամբ, անվեհեր կամքով ճեղքել հավերժական սառույցները, անզոր էր դիվանագիտական կեղծիքի, խորամանկության և խաբեության առաջ: 1929 թ. սեպտեմբերին նա Ազգերի լիգայից պահանջեց դադարեցնել հայ տարագիրների հայրենադարձության հարցի անօգուտ քննարկումը: Նանսենը հրատարակեց «Խաբված ժողովուրդ» գիրքը, որտեղ արտահայտված էր հայ ժողովրդի նկատմամբ նրա՝ իսկական բարեկամի կարեկցանքն ու հավատը: Մեկ տարի անց, 1930 թ. Ֆրիտյոֆ Նանսենը վախճանվեց: Տարագիր հայերի զանգվածային հայրենադարձություն կազմակերպելու Նանսենի երազանքը իրականացավ Հայրենական մեծ պատերազմի հաղթական ավարտից հետո՝ Սովետական Միության կառավարության ջանքերով ու միջոցներով:

ՎԱՐԴԱՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ



Լուսանկարը՝ ԱՎԵՏ ԽՍԱՅԱՆԻ

# ՓՈՂՈՑ-ԱՅԳԻ

Երևանի Նորքի առաջին զանգվածում կա մի փողոց, որն ավելի շատ զբոսայգի կամ պուրակ է հիշեցնում: Այն սկիզբ է առնում Գայի արձանի մոտից և գնում, ավարտվում նույնքան ինքնատիպ ձևավորված, խճանկարազարդ «Նորք» կինոթատրոնի շենքի մոտ: Փողոցը իր մեջ է առել զբոսայգին, իսկ ինքն էլ շրջափակված է բազմահարկ շենքերով: Առաջին հայացքից դժվար է նույնիսկ այն փողոց անվանել, բայց դա փողոց է և կրում է հայ ժողովրդի լավագույն բարեկամներից մեկի, նորվեգացի խոշորագույն գիտնական, անվանի ճանապարհորդ, հասարակական ակտիվ գործիչ Ֆրիտյոֆ Նանսենի անունը:

«Նանսենը մեծ էր որպես բևեռախույզ, ավելի մեծ՝ որպես գիտնական և էլ ավելի մեծ՝ որպես մարդ»: Հանրահայտ բևեռախույզ Հարալդի այս խոսքերն էին Նանսենի փողոցի հիմնադրման տասնամյակին նվիրված փառատոնի նշանաբանը: Փառատոնին մասնակցելու էին եկել Սովետականի շրջանի բոլոր դպրոցների պատվիրակները, իսկ տանտերերը այդ նույն փողոցի վրա գտնվող և նույնպես առաջին տասնամյակը բոլորած № 134 դպրոցի սաներն էին:

Փառատոնը բացեց Սովետականի շրջսովետի գործկոմի նախագահի տեղակալ Հ. Մարկոսյանը, իսկ դպրոցի դիրեկտոր Ինկրա Աթոյանը պատմեց մեծ գիտնականի ու մեծ մարդու կյանքի ու գործունեության, հայկական մեծ եղեռնից վերապրողներին ցուցաբերած նրա օգնության մասին:

Ելույթներից, արտասանություններից, տարբեր մարզախաղերից հետո, երբ օրն արդեն իրիկնանում էր, պիոներ-դպրոցականները ուրախ երգերով ու զվարճալի խաղերով փակեցին փառատոնը:

ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ

# ՂՈՒՆԿԻԱՆՈՍ ԿԱՐՆԵՑԻ



ՎԻԿՏՈՐ ՀՈՎՍԵՓՅԱՆ

Մատենադարանում մի գիրք կա, որը կոչվում է «Քերդուածք Ղունկիանոս երգչի Կարնեցւոյ»:

Ջավախքի Վարևան գյուղում մի մատուռ կա, որը կոչվում է «Սուրբ Ղունկիանոս»:

Իսկ ո՞վ է Ղունկիանոսը:

Նրա մասին հարգանքով է խոսում ռուս անվանի բանաստեղծ, հայ պոեզիայի մեծ գիտակ ու երախտավոր Վալերի Բրյուսովը, Ղունկիանոսին համարելով հայ աշուղական պոեզիայի ամենանշանակալից երևույթներից մեկը՝ Սայաթ-Նովայից հետո:

— Ղունկիանոսը,— ակնածանքով ասում էր տատս,— սուրբ է, ճգնավոր, աստծու մարդ: Երբ Կարնո և Մշո աշխարհից մեր պապերը գաղթել են Ջավախք, ինքն ու իր աղոթքներն են ուղեկցել, որ աստված պահապան լինի վտարանդի ու անօթևան գաղթականներին: Նա գնացել է ռուսաց թագավորի մոտ ու խնդրել, որ փրկության ձեռք մեկնի իր գաղթական հայրենակիցներին, որ տնավորվեն ու երջանիկ ապրեն: Իր անձն ուրացած, նա թափառել է գավառից գավառ, խրատ ու խորհուրդ տվել ժողովրդին, հաշտեցրել խռովյալներին, տաղեր է գրել ու երբ մեռել է, նրա շիրմին լույս է իջել... Յոթ լեզու է իմացել, ոսկեգրավոր գիր ու փետուր է ունեցել, հողաչափություն ու թվաբանություն է սովորեցրել:

Եվ ամեն անգամ տատիս պատմությունն ավարտվում էր Ղունկիանոսի երգով.

Սեյր արի կանաչան պտղալի ծառներ,
Թև-թև ճյուղերով իրար են բռնել,
Սերգևիլներ, տանձեր, խաղողներ, նռներ,
Պատվական խիստ համեղ մրգեր կան անուշ:

Ավելի ուշ ես ծանոթացա Ղունկիանոսի գրավոր կենսագրության հետ: Ծնվել է 1781—86 թվականներին Կարին (Էրզրում) քաղաքում: Կրթություն ստացել է Լիբանանի Անտոնյաց վանքում: Տիրապետել է արաբերեն, պարսկերեն, քրդերեն, թուրքերեն, ռուսերեն և այլ լեզուների: Եգիպտական Իբրահիմ փաշայի մոտ աշխատել է որպես պալատական թարգմանիչ: Քաղաքական հարցերով գործուղվել է Պետերբուրգ: 1828 թվականին, երբ Արևելյան Հայաստանը միանում է Ռուսաստանին ու սկսվում է արևմտահայերի կանգվածային գաղթը, բանիմաց վանականը գաղթականներին մատնացույց է արել փրկությունը՝ դեպի Ռուսաստան: Տարբեր առիթներով եղել է Պարսկաստանում, Պոլսում, Թիֆլիսում: Ուսուցչություն է արել Ախալցխայի հայաբնակ գյուղերում: Գրել է կգալի թվով տաղեր, որոնց մի մասը մեզ չի հասել: Մահացել է 1841 թվականին ու թաղվել Վարևան գյուղում:

Երբ Մատենադարանում կարդացի նրա կենսագրությունը, իմ մեջ նորովի հնչեցին ժողովրդական ավանդությունների այն պատառները, որոնք այնքան երկյուղածությամբ պատմում էր Ղազո տատս, որոնց մեջ ժողովուրդը սրբացրել ու պանծացրել է իր երգիչ որդու անունը, նրա մեջ ասես կերպավորելով իր բախտն ու հույսերը, իսկ սրբացված գերեզմանի վրա կառուցել մատուռ:

Ժողովրդի մեջ «քաղցրաձայն եղբայրները» շարունակում են շուրթեշուրթ տանել նրա երգերի կտորները, ինչպես նաև ավանդությունները նրա մասին, որոնցից մի շարք հանձնում ենք ընթերցողի ուշադրությանը:



## ԻՍԿ ԻՆՁ ՀԱՄԱՐ՝ ԵՐԳ

...Ղունկիանոսի հայրը՝ Աճեմ Հարություն աղան վաճառական էր: Նա հաճախ ամիսներով բացակայում էր տնից: Ընտանիքը սպասում էր վաճառականի դարձին:

Վերադառնում էր Աճեմ աղան:

— Աճե՛մ, ի՞նչ ես բերել ինձ համար,— ասում էր կինը՝ Սրմա խաթունը:

— Արծաթե կարդերով գոգնոց:

— Բա ի՞նձ համար,— վրա էր վազում աղջիկը՝ Համասիկը:

— Ոսկենք և հակինթե ակով

մատանի:

Ներս էին գալիս Կարնո առևտրականներն, ու Աճեմը նրանց տալիս էր ռուսական դանակներ, լամպեր, ամանեղեն և այլն:

Ամենից եռ հորն էր մոտենում Ղունկիանոսը.

— Իսկ ինձ համար, հայրի՛կ,— դիմում էր Ղունկիանոսը, վերցնում հոր բերած նոր գոտին կամ գլխարկը, դնում մի կողմ ու բռնում հոր չուխայի փեշը,— նոր երգ չե՞ս բերել...

— Բերել եմ, Ղունկիանո՛ս ջան,— որդու գլուխը շոյելով ասում էր Աճեմն ու բազմոցին պառկելով երգում Թիֆլիսում կամ Թավրիզում աշուղներից լսած նոր երգը: Տղան ականջաիչ լսում էր հորն ու մեկ անգամ լսելուց հետո ինքն էր երգում հայերեն, թուրքերեն կամ ֆարսերեն երգը:

Ուրախանում էին բոլորը, բոլորից շատ՝ Ղունկիանոսն ինքը:

## ԶՈՐԱՎՈՐ ԳԻՐԸ



Արևմտյան Հայաստանում իրադրությունը խառն էր: Ուսի փոքրիկ կապոցի մեջ պահած մի երկու գիրք, մելան ու փետուր, Ղունկիանոսը անցնում է գյուղից գյուղ, քաղաքից քաղաք ու երգեր գրում իր և իր ժողովրդի կյանքի մասին.

Կպտտվիմ քաղքեքաղաք,
գեղեգեղ,
Չունեմ հանգստություն,
մեկ դադար, մեկ տեղ,
Աչքիս անձրևներեն պրծել է
հեղեղ,
Կմորմոքամ, գիշեր կլամ,
ցոր կլամ:

Պատմում են, որ իբր թուրքական մի գյուղով անցնելիս, հանկարծ լսում է մի թուրք գեղջկուհու լացի ձայն:

Մոտենում է, հարցնում պատճառը:

— Ինը երեխա ունեմ, իսկ ամուսնուս փաշան բանտարկել է և առավոտը կառափնարան են տանելու,— ասում է կինը:

Ղունկիանոսը քննում է կնոջը, իմանում գործի իսկությունն ու մի գիր է գրում փաշային: Վերջինս նամակը կարդալուն պես ավատ է արձակում կալանավորին ու փոխարենը պահանջում գրի հեղինակին: Ղունկիանոսը ներկայանում է պալատ:

— Քո գիրը վկայում է, որ դու իմաստուն մարդ ես,— իբրև թե ասել է փաշան,— ուզում եմ քեզ լավություն անել, ասի՛ր ինչ կամենաս:

— Ի՞նչ պետք է կամենամ,— ասում է Ղունկիանոսը,— անմեղ մարդկանց մի՛ բանտարկեք, առանց վերջնական ճիշտ պարզաբանման՝ մեղադրյալին կառափնարան մի՛ ուղարկեք, իսկ ինձ տվեք մի տեղեկանք, որ ճանապարհին չնեղեն:

Փաշան, իբրև թե, կատարում է երգչի վերջին պահանջը և միշտ մարդկանց բանտարկելիս կամ պատժելիս, իբրև թե, հիշում է նրա խոսքն ու անունը:

— Մարդասեր էր և զորավոր գիր ուներ,— ասում էր տատս:

## ՌՈՒՍԱՑ ԹԱԳԱՎՈՐԻ ՄՈՏ

...Եգիպտոսում, երբ իմանում են, որ յոթ լեզու գիտի, լուր են տալիս Իբրահիմ փաշային: Վերջինս իր մոտ է կանչում Ղունկիանոսին և առաջարկում, որ մնա իր պալատում որպես թարգմանիչ:



Ղունկիանոսը համաձայնում է: Մի ժամանակ աշխատում է որպես թարգմանիչ: Մի անգամ էլ, երբ փաշան պատվիրակություն է ուղարկում ռուսաց թագավորի մոտ, Ղունկիանոսին նշանակում է ղեկավար:

Ռուսաց թագավորի մոտ հարցը քննարկելուց հետո Ղունկիանոսն ասում է.

— Թագավորն ապրած կենա, շատ եք ծերացել:

— Իսկ ինձ ե՞րբ և որտե՞ղ եք ջահել տեսել:

— Ձեր և ձեր թագուհու նկարը Կարնո վանքին էր նվիրել իմ հայրը: Կարնո վալին դրա համար հորս և մեր հարազատներին շատ նեղեց և նրանց անունները գրել տվեց Սուլթանին անհավատարիմ մարդկանց ցուցակում, հիմա էլ են նեղում...

— Ինչո՞վ կարող եմ հատուցել,— հարցնում է ռուսաց թագավորը:

— Մենք քո նկարն ենք կախել մեր վանքում, դու էլ քո սուրը կախիր մեր թշնամու գլխին ու մեզ առ քո ձեռքի տակ...

— Ղունկիանոսը չլիներ, ռուսաց զորքը չէր հասնի հայերին օգնության,— հավատացնում էր տատս:

## ԱՅՆ ԱՍՏՂԸ

...Կարինում իր պապենական տունը ավեր գտնելով, Ղունկիա-

նոսն սկսում է որոնել իր հարազատներին: Ոչ ոք չի ասում, թե ուր են գաղթել նրանք: Թափառական երգչին ճանապարհը տանում է Հայաստանի տարբեր շրջաններ ու վերջապես Լոռի, Շիրակ ու Ջավախք:

Մի մութ գիշեր ուղեկորույս երգիչը մոլորվում է լեռնային հովտում:

— Մի աստղ բռնեմ նշան ու գնամ,— ասում է ինքն իրեն ու այդպես էլ անում է:

Գնո՜ւմ է, գնո՜ւմ և վերջապես դեմ առնում մի տան դռան: Թակում է: Նախքան դուռը բացելը կանացի ձայնը ներսից հարցնում է:

— Ո՞վ է:

— Ես եմ,— ասում է Ղունկիանոսը,—ճանաչելով քրոջ ձայնը:

Բացվում է դուռը՝ իրար դեմ կանգնած են տարիներ առաջ իրար կորցրած քույրն ու եղբայրը:

— Ղունկիանո՛ս, քեզ ո՞վ ցույց տվեց իմ տունը:

Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ



— Այն ա՛ստղը, Համասփ՛կ,— դողդոջում է՝ մատը պարզելով երկինք,— այն աստղը, ինչպես «Ավետարանի» երեք մոգերին:

Պատմում էր տատս ու ցույց տալիս Հյուսիսային աստղը:

## ԳՏՆՈՒՄ Է ԾՆՈՂՆԵՐԻՆ

...Քրոջից իմանում է, որ ծնողներն ապրում են մոտակա գյուղում: Քրոջ ամուսինն ուզում է ուղեկցել, չի համաձայնում, մենակ գնում է գտնելու ծնողներին, խոստանալով նորից ետ գալ: Հասնում է գյուղ ու գյուղացիներին հարցնում «Ղունկիանոսենց տունը»:

— Ո՞ր Ղունկիանոսի,— հարցին հարցով են պատասխանում հանդիպողները,— մեր գյուղում շատ Ղունկիանոսներ կան: Սուրբգուշակ Ղունկիանոսի պատվին շատերն իրենց որդիներին Ղունկիանոս են կոչել:

— Իսկ ո՞վ է այդ գուշակ Ղունկիանոսը...

— Ղունկիանոսը մարգարե է եղել,— ասում են,— դեռևս քանի՜ տարի առաջ նա կուշակել է մեր փրկությունը, ասել է. «Հայերի փրկությունը եթե գա, Ռուսաստանից կգա»: Այդպես չեղա՞վ...

Եվ վերջապես ցույց են տալիս մարգարե Ղունկիանոսի ծնողների տունը: Ներկայանում է արդեն պառամած ծնողներին ու խնդրում հյուր ընդունել: Ծերուկն ու պառավը հրաժարվում են, բայց երբ հիշեցնում է. «Ձեր կորած Ղունկիանոսի խաթրու», համաձայնում են, մտածելով, որ գուցե իրենց որդին էլ հիմա ուրիշի դուռըն է թակում: Շուտով ձեռքի ապին տեսնելով, ծնողներն իմանում են, որ հյուրը հենց իրենց որդին՝ Ղունկիանոսն է որ կա:

## ԳԵՐԵԶՄԱՆԸ

...Ասում են գերեզմանի վրա լույս է իջել:

Ժողովուրդը միշտ էլ իր սիրած անունների շուրջը լեգենդներ է հորինում: Գերեզմանը դարձել է երկու հարևան գյուղերի միջև կովախնձոր, որովհետև այն գյուղի հանդում, որտեղ թաղված է Ղունկիանոսը, կարկուտը չի վնասել:

Հարևան գյուղացիները մի քանի անգամ փորձել են գողանալ երգչի գերեզմանը, բայց մոգական զորությամբ, գողանալու եկածների աչքերի դեմ երևացել է անանցանելի պարիսպ:

Մի աղջիկ ծամածռություններ է արել երգչի շիրմաքարի մոտ և ոտքը կպել է քարին: Այն պոկել են միայն աղոթելով ու կոհեր ողջակիզելով, հավատացնում էր տատս:

## ՆՈՐ «ԱՎԱՆԴՈՒԹՅՈՒՆ»

...Ավանդությունների մեջ մարդ ակամայից ուզում է գտնել իրականը: Իսկ այստեղ իրականը նման է ավանդության:

Ղունկիանոս երգիչ Կարնեցին կանխատեսեց, որ Ռուսաստանը կփրկի հայերին կորստից ու կոտորածներից: Որտեղից որտեղ, հայ ժողովրդի լայն մասսաներին տակավին անհայտ մի անուն հանկարծ հասավ ռուս բանաստեղծ Վալերի Բրյուսովին, սա թարգմանեց նրա տաղերից ու զետեղեց «Հայ պոեզիայի անթոլոգիայի» մեջ և ներկայացրեց ոչ միայն աշխարհին, այլ նաև իրենց՝ հայերին... Բրյուսովը համարեց նրան ոչ թե սովորական աշուղ, այլ աշուղներով հարուստ հայ ժողովրդի երկու անկրկնելի անունների՝ Սայաթ-Նովայի ու Ջիվանու կողքին դրվելու արժանի անուն: Ավանդության պես է, բայց ավանդություն չի, այլ՝ իրողություն:

# ԼԵՆԻՆՅԱՆ ԿՈՄԵՐԻՏՄԻՈՒԹՅՈՒՆԸ



















Վեց տասնամյակ առաջ՝ 1918 թվականի հոկտեմբերի 29-ին Մոսկվայում բացված բանվորագյուղացիական երիտասարդության միությունների առաջին համագումարը որոշում ընդունեց երիտասարդական բոլոր միությունները միավորել Ռուսաստանի կոմունիստական երիտասարդության միության մեջ: Այս կարևոր իրադարձությունը համընկավ քաղաքացիական կռիվների եռուն շրջանին, երբ հակահեղափոխական և աշխարհի բոլոր հետադեմ ուժերը ոտքի էին ելել կործանելու նորաստեղծ սովետական կարգերը:

Թե՛ քաղաքացիական կռիվների ժամանակ, թե՛ սոցիալիստական շինարարության տարիներին, թե՛ Հայրենական մեծ պատերազմի օրերին և հետո մեր երկրի կոմերիտականները՝ ՍՄԿԿ-ի ղեկավարությամբ և նրա հետ ուս-ուսի ընթացան առաջին դիրքերում, տվեցին հերոսական պայքարի ու աշխատանքի անկրկնելի օրինակներ:

Այսօր մեր հայրենիքի քարտեզը մի անծայրածիր շինարարական հրապարակ է հիշեցնում... Մեր երկիրը ձեռնամուխ է եղել աշխարհում հավասարը չունեցող Բայկալ-Ամուրյան մայրուղու կառուցման, Տյումենի մարզի, Հեռավոր արևելքի և այլ շրջանների հանքային հարստության արդյունահանման ծանր, բայց մեր հայրենիքը էլ ավելի հարուստ ու հզոր դարձնող մեծագույն աշխատանքներին: Այս ամենը իրականացվում է հիմնականում կոմերիտականների ու երիտասարդների ուժերով: Բավական է ասել, որ ժողտնտեսության համար առավել կարևոր նշանակություն ունեցող նման 240 կառույցներ հայտարարված են կոմերիտական հարվածային, իսկ 125-ի շեֆությունը վերցրել է ՀամԼԿԵՄ Կենտկոմը:

Լենինյան կոմերիտմիության հեղափոխական,՝ մարտական ու աշխատանքային փառավոր գործունեությունը նկատի ուներ ընկ. Լ. Ի. Բրեժնևը, երբ ՀամԼԿԵՄ 18-րդ համագումարում արտասանած իր ճառում ասաց. «...Նրանք ամեն մի գործի մեջ մտցնում են իրենց հատուկ ռոմանտիկական ավյունը, և ես կասեի, երիտասարդական խոյանքը: Այդ ամենի համար շնորհակալություն կոմերիտմիությանը, շնորհակալություն սովետական երկրի բոլոր երիտասարդներին»:

# 60 ՏԱՐԵԿԱՆ Է




## ԼՈՒՍԻԿ ԼԻՍԻՆՅԱՆ



Նա առաջին կոմերիտականներից ու կոմերիտմիության առաջին կազմակերպիչներից մեկն է եղել:

Ծնվել է Թիֆլիսում, 1897 թվի մայիսի 21-ին: 1905 թվականի աշնանը մտել է «Ուսուցչուհիների ընկերության դպրոցը»: Այստեղ պատմությունը դասավանդում էր ականավոր բոլշևիկ Ելենա Դմիտրիևնա Ստասովան, որն իր աշակերտուհու մեջ սերմանեց հեղափոխական գաղափարներ: Պատանեկան հասակից Լուսիկն աչքի էր ընկնում բացառիկ լրջությամբ, ազնվությամբ, սկզբունքայնությամբ:

Տասներեքամյա Լուսիկի օրագրում հանդիպում ենք Շիլլերի, Շեքսպիրի, Պուշկինի, Տուրգենևի, Րաֆֆու, Շիրվանզադեի անուններին և նրանց թևավոր ասույթներին:

«Հենց հիմա վերջացրի Շիլլերի «Ավազակները»,— գրում է նա,— ի՜նչ մեծ և վորեղ գործ է... «Ավազակները» ինձ հիշեցնում է «Արքա Լիրը» և «Մակբեթը»: ...Դրանք բոլորն էլ ուժեղ բնավորություններ են, բայց ինձ ամենից ավելի դուր է գալիս գլխավոր հերոսը՝ Կարլ Մոորը: Ես նրան շատ եմ սիրում, շատ»:

Տարրական դպրոցն ավարտելուց հետո՝ 1910 թ. փայլուն քննություն հանձնելով ընդունվում է Թիֆլիսի օրիորդաց առաջին գիմնազիան:

Գիմնազիայում սովորելու ժամանակ Լուսիկ Լիսինյանը ստանում է իր բոլշևիկյան մկրտությունը՝ մտնում է ընդհատակյա հեղափոխական խմբակի մեջ: Ապակետիպով բազմացնում էր թռուցիկներ, անքուն գիշերներ էր անցկացնում, որպեսզի ժամանակին տպագրվեն հեղափոխական թռուցիկները, որոնք վաղ առավոտյան տարածվում էին ողջ Թիֆլիսում: Վաղ հասակից նա գտնվում էր ոստիկանության հսկողության տակ:

1916 թվականին Լուսիկ Լիսինյանն արդեն Մոսկվայումն է: Նա ընդունվում է Առևտրական (ներկայումս Պլեխանովի անվան ժողովրդական տնտեսության) ինստիտուտի տնտեսագիտական բաժինը: Շուտով ընդգրկվում է Զամոսկվորեցկի ընդհատակյա բոլշևիկյան կազմակերպության խմբակներից մեկի մեջ և մտնում կուսակցության շարքերը: Ինստիտուտի ճաշարանը դարձել էր անլեգալ աշխատանքի կենտրոնը: Այդտեղ տպագրվում էր մարքսիստական գրականություն, որը հենց իրենք՝ ուսանողները, Լիսինյանի գլխավորությամբ, տարածում էին ինստիտուտում և Զամոսկվորեցկի աշխատավորության շրջանում:

1916 թվականի վերջին Լիսինյանն արդեն հանդես է գալիս որպես բոցաշունչ ագիտատոր և հրմուտ կազմակերպիչ: Կուսակցության հանձնարարությամբ նա ղեկավարում է Դանիելովյան մանուֆակտուրայի ֆաբրիկայի և Միխելսոնի (ներկայումս Վ. Ի. Լենինի անվան) գործարանի քաղխմբակը:

«Ես հիշում եմ, թե ինչպես էին լսում Լուսիկին,— պատմում է նրա ընկերուհիներից՝ Եկատերինա Կարմանովան իր հիշողություններում:— Բանվորները շունչները պահած կլանում էին նրա յուրաքանչյուր բառը՝ մեծ խանդավառությամբ համակվելով դեպի հեղափոխությունը»:

Այդ դեռատի աղջիկը օժտված էր մտքի մեծ հարստությամբ, խոսքի հիանալի ուժով:

Լուսիկը պգայուն, ուշադիր էր դեպի բանվորները, իր գաղափարակից ընկերները, ինչպես նաև դեպի իր ծնողներն ու քույրերը, որոնք ապրում էին Թիֆլիսում: Նա կրճատում էր իր սննդի համար հատկացված ծախսերը և դրամական օգնություն էր ցույց տալիս փոքր քրոջը՝ Անիկին, որպեսզի նա ռուսաց լեզվի մասնավոր դասեր առնի:

Սակայն նա միաժամանակ անողոք ու խիստ էր քաղաքական հակառակորդների նկատմամբ: Այդ պատճառով էլ ընկերները նրան կատակով մասրենի (*шиповник*) էին անվանում:

1917 թ. փետրվարյան հեղափոխությունից հետո Միխելսոնի

գործարանի բանվորական երիտասարդական կազմակերպությունը աչքի ընկնողներից մեկն էր երկրում: Այն կազմակերպել էր Լուսիկ Լիսինյանը: Նա ակտիվ մասնակցություն ունեցավ նաև «Երրորդ ինտերնացիոնալի» բանվոր-երիտասարդության կազմակերպության ստեղծմանը, որը մեր պանծալի կոմերիտմիության նախորդը հանդիսացավ:

Վրա հասավ 1917 թվականի հոկտեմբերը:

«Ուռա՜, գուցե վաղը Պիտերում սովետներն իրենց ձեռքը վերցնեն իշխանությունը... Կեցցե՛ բանվորների միջազգային սովետը»,— գրել է նա իր նամակներից մեկում:

Մոսկվայում Հոկտեմբերյան պինված մարտերի օրերը Լուսիկի համար հոգեկան մեծ վերելքի օրեր էին: Օրը մի քանի անգամ խոշոր ձեռնարկություններում Լուսիկը միտինգներ էր անցկացնում, հաղորդումներ էր ընդունում Զամոսկվորեցկի ռազմահեղափոխական կոմիտեում, մասնակցում էր սանիտարական ջոկատների կազմակերպմանը, վիրակապում էր վիրավորներին, բազմակն կապոցներ էր փոխադրում: Երբ կենտրոնի հետ կապն ընդհատվում էր, կապավորների խմբի գլուխ անցած, վտանգավոր տեղամասերով գնում էր կարգադրություններ բերելու:

Նոյեմբերի 14-ի առավոտյան Լուսիկը ռազմահեղափոխական կոմիտեի շտաբում իմանալով, որ Օստոժենկայում դրությունը լուրջ է, հայտարարում է.

— Ես գնում եմ մերոնց մոտ՝ Օստոժենկա:

Օստոժենկան Զամոսկվորեչիեի

# Ռուսաստանին

Ճշմարտապես սրբազան Ռուսաստան,
Դո՛ւ, որ ինքնամփոփ, երազում էիր ստեպներիդ մեջ
Քաղաքներ կառուցել և կատաղի կռվում էիր ոսոխներիդ հետ,

Դո՛ւ, որ հերկերի մեջ դատում էիր տաժանքով,
Դուրս բերելու համար ամենքին անհրաժեշտ ցորենը
Եվ ճակատդ սրբում երկնքի մի պատառով,

Դո՛ւ, որ միևնույն ուժգնությամբ մրճահարեցիր
Թշնամիներիդ ու հրացայտ հնոցից դուրս քաշեցիր
Թե՛ մետաղը և թե՛ մտածումը,

Դո՛ւ, որ իբրև ընդարձակ պատ, նախ խախտվեցիր
Եվ հետո, իբրև անսահման անտառ, ճամփա եղար
Ծամփրելու հարձակիչներիդ.
Նայի՜ր, ո՜վ Ռուսաստան, զավակներիդ, որ պաշտպանում են քեզ
Այն եղբայրական ազգերի հետ, որոնց դու պաշտպանեցիր,
Եվ որոնք քեզանով այսօր իրենք իրենց են պաշտպանում...

Նայի՜ր հինավուրց Հայաստանին, որ քո շնորհիվ
Վերագտել է իր ուժն ու հանճարը
Մարտերի մեջ, որ քեզ հետ մղում է նա
Եվ թեժ մարտերում նայում է քեզ, ո՜վ Ռուսաստան,
Եվ մոտից ու հեռվից ասում՝ շնորհակալություն:



«Նա արևմտահայ վերջին և սփյուռքահայ առաջին բանաստեղծն էր», այսպես են բնութագրում նշանավոր բանաստեղծ և հասարակական գործիչ Վահան Թեքեյանին, որի ծննդյան հարյուրամյակը լրանում է այս տարի: Նրան վիճակվեց այն ծանր ճակատագիրը, որ ունեցավ թուրքական բռնապետության տակ

ամենավտանգավոր տեղամասն էր: Թշնամիները կրակում էին տների պատուհաններից, օդանցքներից, ամեն տեղից: Հենց Օստոժենկայում էլ նոյեմբերի 14-ին, ցերեկվա ժամը 1-ին բարիկադից բարիկադ անցնելու ժամանակ Լուսիկը զոհվեց:

Նոյեմբերի 15-ին հակահեղափոխական ուժերը ջախջախվեցին, հեղափոխությունը հաղթեց նաև Մոսկվայում:

Կալուժսկի հրապարակը բազմամարդ էր: Այստեղ էին հավաքվել Լուսիկ Լիսինյանի մարտական ընկերները, երիտասարդական միության անդամները, հարազատները: Եկել էին նրանք համար մարտերից հետո իրենց վերջին հրաժեշտը տալու հեղափոխության անձնուրաց զավակներին, որոնց կյանքի գնով ձեռք բերվեց հաղթանակը: Լուսիկին արժանացրին զինվորական պատվի: Խաչաձևած հրացանների վրա դուրս բերեցին նրա դագաղը և ուղղվեցին դեպի Կարմիր հրապարակ: Այդ օրը հերոսների պատվին անդադար կանչում էին Մոսկվայի գործարանների շչակները: Լուսիկին թաղեցին Կարմիր հրապարակում՝ Հոկտեմբերի հերոսների եղբայրական գերեզմանում:

Մոսկվացիները, ի հիշատակ 20-ամյա հերոսուհու՝ Մոսկվայի փողոցներից մեկը (նախկին Մալայա Սերպուխովսկայան) անվանեցին Լուսինովսկայա:

Կոմերիտմիության 60-ամյակի հոբելյանական օրերին Լուսինովսկայա փողոցի կանաչապատ պուրակում իր ամբողջ հասակով մեկ վեր կբարձրանա Լուսիկ Լիսինյանի արձանը:

*ՌՈԶԱ ՓԱՇԻՆՅԱՆ*

# Ներկա Հայաստանին

## Ա

Հո՞ղ այնտեղ և հողին վրա ցեղ...
Կկոխե ցեղը զայն, կմխե
Անոր մեջ կամքն ուժեղ ու անշեղ
Եվ նորեն կքաղե ուժ անկե...

Հո՞ղ այնտեղ՝ բարեկամ, բարերար.
Չփախչող ոտքին տակ. վեր բռնող
Մարդոց մեջքն ու գլխուն մեջը հար
Վերածվող համփայի լուսաշող...

Հո՛ղ վստահ, ուր ամեն մարդ ու կին,
Այնտեղ նոր աչք բացող մանուկին,
Այնտեղ նոր բարձրացող հասկերուն,
Նո՛ր շենքին, նո՛ր հենքին, մտքին նո՛ր
Կնայի հրճվանքով մը սովոր,
Կկեցվի անդորրով մը աննուն...

## Բ

Երկիրը հո՛ն իր զավակինն է այլևս,
Անոր ճակտեն հոսող քրտինքը կերթա
Մեծ հայրերուն մինչև կրծոսկրը թերևս՝
Հաստատելու իր տանը հիմն անոր վրա...

Ո՛չ ոք այնտեղ ա՛լ իրեն ծուռ կնայի...
Ավերակներն անգամ մշտի մ՛ուզին արդ,
Երբ կտեսնեն դեմը իրենց՝ ամայի
Գետնեն ելլող շինությանց շարքը հպարտ...

Եվ հո՛ղը, հո՛ղն իր գնրությունն ա՛լ թոթված,
Իր քնդերքեն ոչ միայն ուժ, այլ և խելք
Կհայթայթե Հայուն ի մեն մի հարված...

Եվ շղթային՝ Արևմտաքեն Արևելք
Վերակապվող կյանքի ամուր շղթային
Կըլլա մեր պինդ ազգը օղա՞կը նախկին...

գտնվող ողջ արևմտահայությունը: Ծնվել է Պոլսում, 1878 թվին, այնտեղ էլ անց է կացրել իր մանկությունն ու պատանեկությունը, տեսել է անօրինակ բռնություններ, պարբերական կոտորած, հայրենի երկրից հռով ու սրով արտաքսված ողջ արևմտահայության հետ անցել է մեծ եղեռնի արհավիրքների միջով, և այնուհետև բաժանել նրա դաժան ճակատագիրը, դարձել աշխարհով մեկ սփռված տարագիր հայության հայրենապաշտ, տառապալից հոգու երգիչը:

Նա շատ ջերմ տողեր է ձոնել Սովետական Հայաստանին, իբրև վերածնված հայության օրրանի:

1944 թվի հունիսի 12-ին ՍՍՀՄ-ի Կահիրեի դեսպանատանը կայացած հանդեսի ժամանակ, կարդացել է ռուս ժողովրդին նըվիրած իր մի բանաստեղծությունը՝ գրված ֆրանսերեն, որի ազատ թարգմանությամբ, մայր Հայաստանին նվիրված զույգ բանաստեղծության հետ, տպագրում ենք ստորև:

# ԶՐՈՒՅՑՆԵՐ ԼԵԶՎԻ ՄԱՍԻՆ

*ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*
*Բանասիրության դոկտոր*

## 6. ՏՐԱՄԱԲԱՆՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔԵՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԿԱՄ՝ ՔԵՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՕԳՈՒՏԻ ՄԱՍԻՆ

Մեր նախորդ զրույցում խոսում էինք տրամաբանության մասին իբրև գեղեցիկ խոսքի առաջին ու պարտադիր պայմանի: Եթե այդպես է իրոք, եթե իսկապես տրամաբանությո՛ւնն է իմաստալից խոսքի առաջին պայմանը, ապա ճիշտ է և այն, որ լեզվի տրամաբանության օրենքների համակարգումը քերականությունն է:

Հիշում եմ իմ դասընկերներին գրատախտակի առաջ նախադասություն վերլուծելիս. այն ջանքը, որ նրանք գործ էին դնում բարդ նախադասության անդամները որոշելու համար՝ տրամաբանելու նույն և ոչ պակաս դժվարին այն ջանքն էր, որ պետք էր որևէ թեորեմ ապացուցելու կամ հանրահաշվական հավասարում լուծելու համար: Ո՛չ մի տարբերություն: Նախադասությունն ինքնին նույնպիսի հավասարում է, ուր ամեն բառ պետք է ունենա իր ստույգ տեղը, իր նշանակությունը, պետք է կատարի իր պարտականությունն այնպես, ինչպես թվանիշը հավասարման մեջ: Եվ շատ հաճախ այդ ամենը որոշելու, ասենք, բարդ ստորադասական նախադասության մեջ ուղիղ խնդիրը գտնելու համար երբեմն պահանջվում է տրամաբանության, մտքի նույնպիսի լարում, ինչ որ հանրահաշվական խնդիրը:

Բայց,— կարող են և հարցնել,— ի՞նչ կարիք կա լարվելու, եթե բանը վերաբերում է խոսքին, վերջապես, ինչի՞ է պետք քերականությունը, երբ շատ հանգիստ խոսում են նաև քերականություն չիմացող մարդիկ:

Հասկանալու համար դիմենք այսպիսի մի համեմատության:

Կարելի՞ է ավտոմեքենա վարել՝ առանց նրա ներքին կառուցվածքը, մեխանիզմն իմանալու: Կարելի՛ է: Կարելի՞ է խոսել առանց քերականություն՝ լեզվի մեխանիկան իմանալու: Նույնպե՛ս կարելի է: Երկու դեպքում էլ դա մոտավորապես նույնն է, ինչ որ այն, որ մենք հեշտությամբ գործի ենք դնում հեռացույցը՝ անտեղյակ նրա սարքավորման անհնարին բարդու-

# ՄԻ ԱՆԳԱՄ ԱՄՌԱՆԸ

*Ամռանը հանգստանում էի գյուղում: Ամեն առավոտ, դեռ լույսը չբացված, տատիս հետ գնում էի անասնապահական ֆերմա: Նա ֆերմայի ամենաատարեց կթվորուհին էր ու շատ էր նվիրված իր աշխատանքին: Բավական էր որ մատղաշ հորթուկներից որևէ մեկին մի բան պատահեր, դառնում էր մտահոգ ու աշխատում էր ամեն կերպ թեթևացնել հիվանդ հորթուկի վիճակը:*

*Մի օր էլ իրիկնադեմին, երբ նախիրը վերադարձավ արոտավայրից, պարզվեց, որ դաշտում է մնացել Մարալ կովի հորթը՝ Չալոն: Տատս անմիջապես վերցրեց ձեռնափայտը և նախրապանի հետ միասին գնացին հորթուկին որոնելու: Ես էլ միացա նրանց: Երկար ժամանակ փնտրում էինք, բայց Չալոն չկար ու չկար: Արևն արդեն մայր էր մտել: Գնալով աճում էր տատիս անհանգստությունը: Մոլորուն նայվածքով այս ու այն կողմ էր նայում և չտեսնելով հորթուկին, ավելի էր մթագնում: Երկար որոնումներից հետո վերջապես գտանք Չալոյին: Պառկած մասրենու մատղաշ թփի տակ, որոճում էր: Նկատելով մեզ, անմիջապես ոտքի ցատկեց և սկսեց բառաչել:*

*— Ջա՜ն,— եղավ՝ տատիս պատասխանը:*

*Ուրախությունից ու հուզմունքից կարկամել կանգնել էի: Նա անմիջապես գրկեց Չալոյին և ընկնեց շոյել ու համբուրել նրա թաց դնչիկն ու վախվորած աչքերը: Իսկ Չալոն հոտոտում էր տատիս ձեռքերը, հացի կտորներ ստանալու ակնկալությամբ:*

*Պակաս չէր ուրախացել նաև նախրապանը: Այդ ընդհանուր ուրախությանը ասես անտարբեր չէին նաև ճանապարհի երկայնքով աճած երկնասլաց բարդիները, որոնք գլուխները միրճած ամառային անամպ երկնքի մեջ, հաճելիորեն սոսափում էին:*

*ՀԱՍՄԻԿ ՄԽԻԹԱՐՅԱՆ*
*Իջևանի № 2 միջն. դպրոց*

թյուններից:

Եթե իրոք այդպես է՝ էլ ինչի՞ է հարկավոր քերականությունը, որ այնպես համառորեն մեզ սովորեցնում են դպրոցում և ոմանք էլ այնպես դժկամությամբ են սովորում նրա բազմաթիվ կանոնները:

Շարունակենք մեր համեմատությունը:

Ենթադրենք, թե մեր վարորդի մեքենան ճանապարհին կանգ է առնում: Ինչ-որ բան է փչացել, գուցե և շատ հասարակ մի բան, բայց նա մեխանի՛կը չգիտե, որ իմանա ինչն ինչից է: Եվ մեր վարորդը, որ շատ վարժ քշում էր մեքենան, դառնում է կատարելապես անօգնական: Ճարահատյալ՝ կանգնեցնում է մեկ ուրիշին. օգնություն է խնդրում: Եվ սա, եթե իմացող մարդ է, տեսնելով, որ եղածը մի մեծ բան չի, կարող է իսկույն սարքի բերել ու ճամփու դնել մեր անճարակ վարորդին:

Գրելիս ու խոսելիս էլ նույնն է կատարվում: Քերականություն չիմացողը կարող է մեկ էլ դեմ առնել մի տեղ ու մնալ մոլորված: Տեսնում է, որ նախադասության մեջ մի բան պակաս է, մի բան իր տեղը չէ, բայց թե ինչը՝ գլխի չի՛ ընկնում: Եվ ինչպե՞ս գլխի ընկնի խեղճը, երբ մեխանիկան՝ քերականությունը, չգիտի: Եթե հոլովման ու խոնարհման կանոնները չգիտի՝ ո՞նց իմանա, թե «մեր վրա՞» պիտի ասել (որ սխալ է), թե՞ «մեզ վրա», «դասարանում կային տասնհինգ աշակերտնե՞ր» (որ սխալ է), թե՞ «դասարանում կար տասնհինգ աշակերտ»: Չգիտի որտեղ պիտի որպեսզի ասել, որտեղ՝ որպիսի, որտեղ՝ սակայն, որտեղ՝ բայց, որտեղ՝ թե, որտեղ՝ որ, որտեղ՝ մինչ, որտեղ մինչև, որտեղ՝ մինչդեռ և այլն, և այլն:

Մինչդեռ քերականություն իմացողը նման սխալներ չի անի, նրա համար ամեն ինչ պարզ է ենթագիտակցաբար, առանց որևէ ճիգի, ինչպես թվաբանական աղյուսակ իմացողը ճիգ չի թափում ասելու համար, թե 6 անգամ 7-ն ինչի է հավասար:

Քերականությունը գիտություն է, լեզվաբանության շատ կարևոր մի ճյուղը: (Փակագծի մեջ ասենք, լեզվաբանությունը ևս, ինչպես ուրիշ գիտություններ, մեր օրերում ճյուղավորվում է ավելի ու ավելի, ստեղծվում են նորանոր ճյուղեր՝ անսպասելի ու զարմանալի. ասենք՝ սոցիոլոգիական լեզվաբանություն, որ վերաբերում է հասարակության մեջ լեզվի տարբեր կիրառություններին, հոգեբանական լեզվաբանություն, որի խնդիրը արտահայտվելու ներքին կազմակերպման ուսումնասիրությունն է, կենսաբանային լեզվաբանություն, նեյրոլեզվաբանություն և այլն):

Քերականությունը լեզվաբանության այն ճյուղն է, որ ուսումնասիրում է լեզվի օրենքները, բառերի ու նախադասությունների կազմը լեզվի մեջ և ըստ այդմ էլ բաժանվում է երկու մասի. ձևաբանության և շարահյուսության, որոնցից առաջինը հետազոտում է բառերի ձևերը, երկրորդը՝ նախադասությունը և բառերի համադրումը նախադասության մեջ:

Լայն առումով՝ քերականությունը շատ բարդ գիտություն է, որ ունի իր ճյուղերը՝ համեմատական քերականություն, պատմական քերականություն, նորմատիվ քերականություն: Դա լեզվաբանության մասնագետների գործն է: Բայց կա նաև դպրոցական քերականություն, որի գիտենալն արդեն պարտադիր է. ամեն մի իսկապես գրագետ մարդու համար այնպես, ինչպես թվաբանության չորս գործողության իմացությունը:

Մեր այս զրույցը երկարեց, մինչդեռ մեր ասելիքը չի սպառվել, ուստի և կշարունակենք հաջորդ անգամ:

## ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՔԱՐԵ ՎԿԱՆ

*Սպիտակից Կիրովական տանող ճանապարհին, Սարալ գյուղ չհասած, աջ կողմում մի հուշարձան-շիրմաքար կա: Այստեղ թաղված են այն 114 ռուս զինվորները, որոնք մայոր Իոսիֆ Մոնտրեզորի (Կարա-մայոր) գլխավորությամբ 1804 թվականի օգոստոսի 21-ին մարտնչելով 6000-անոց պարսկական զորքի դեմ՝ չլքեցին իրենց դիրքերը և ընկան հերոսի մահով:*

*Հենց այդ նույն վայրում, հին հուշասյան կողքին բարձրացել է բազալտակերտ մեծ կամար, որի երկու սյուներին Հայաստանի և Ռուսաստանի պետական գերբերի քանդակազարդումներ են ամրացված:*

*Հուշարձան-կոթողի շուրջբոլորը խնամքով մշակված է: Կանցնեն տարիներ, մատաղ շիվերը հասակ կառնեն և գեղեցիկ պուրակը հոգնած ճամփորդներին իր գիրկն առնելով, կհիշեցնի մեծ բարեկամության ու նրա առաջին պիոներների՝ մայոր Մոնտրեզորի խիզախ մարտիկների մասին, որոնք իրենց կյանքը զոհեցին հանուն պարսկական լծից Հայաստանի ազատագրման:*





# ՏԻՄՈՖԵՅ

ԱՐԾՐՈՒՆԻ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Տատս, ինչպես ամեն մի տատ, սիրում էր պատմել անցյալ օրերից, թոնիր-օջախից, եփել-թխելուց, ձմռում-քթոցից, ձեթի ճրագից ու էլի շատ հին-հին բաներից:

Մի օր էլ թելը կծկելով սկսեց.— Պատահեց, որ ռուս զորք մտավ մեր քաղաք: Է՜-է՜... Ապրել-մեռնելու օրհասական օրեր էին: Օգնության հասան, ու մեր շեն քաղաք փրկվեց բնաջնջումից: Մեր նախշուն այգուց ոչ հեռու, մի կմրուխտ-կանաչ բացատում, երկնահաս բարդիների ծառախմբի շվաքում վրան խփեց մի ջոկատ... Է՛, ինչ պատմեմ, օրե՛ր, սուքուշիկան, էսօր կանք, վաղը չկանք օրեր էին... Մի օր էլ,— շարունակեց տատս ավարտած թելի կծիկը մի կողմ դնելով,— մի ռուս սալդատ, Տո՛մո... Տո՛մո... չէ՛... Տիմո... Տիմոֆեյ... Տիմոֆեյ անունով երևաց մեր դռանը, բարևեց, եկավ նստեց մեր թթենու ծառի տակ, ջրհորի մոտ ու քաղցրանուշ խոսքի բռնվեց մեր հալևորի հետ: Խոսքն էլ ի՞նչ էր՝ ձեռով-ոտով, աչքով-ունքով...

— Ես,— ասաց,— Տիմոֆեյ Իվանովիչ Պետրո՛վ... Պոլտա՛վա, Պոլտա՛վա...— ասում ու ձեռքով ցույց է տալիս իր հեռու-հեռավոր ծննդավայրի կողմերը:

Մեր հալևորն էլ իր ինքնաշեն դեղձի կորիզի համրիչն է քաշում ու գլուխը տմբտմբացնում, յանի թե՝ կհասկանա՛մ, դու ասա՛, գիտեմ, լսել եմ Պոլտա՛վա... Դե, ուրիշ ի՞նչ կարող էր ասել խեղճը:

Հաց դրինք. խաշած ձու, պանիր, մածուն, լավաշ, վարունգ, թարխուն, մի պուլիկ մեր հնձանի թունդ գինուց, կար-կավար, ինչ պետք էր: Տիմոֆեյ սալդատս վերցրեց մեր հաց-լավաշը, կարմացած նայեց, շուռումուռ տվեց, նայեց մեկ, համտես արավ լավաշը, ասաց՝ «շտո՞»:

Հալևորն ասաց.

— Ի՞նչ շտո, հա՛ց ի, հա՛ց, լավաշ ի:

Տիմոֆեյս ծամեց հացը, համն ու հոտն առավ, մտածեց ինքն իր մեջ, աչքը շուռումուռ տվեց, ասաց. «Խորոշո»: Վերցրեց մեկ հատ վարունգ, սալդատավարի կտրեց. «Բաբուշկա,— ասաց,— տոլ ե՛ստ»:

Մեր հալևորը նայեց ինձ, սալդատին նայեց, ասաց.

— Ինչ կասի՞...

— Սո՛լ, սո՛լ,— կրկնեց սալդատը:

— Սո՛լ... սո՛լ... հա՛,— իր հաշվով գլխի ընկավ հալևորն ու դարձավ ինձ.— Աղջի Նարգի՛կ,— ասաց,— կա-չկա էսօր ջվմեն (սապոգ) ոտ պարկեր ի: Է՛, ահագին ճամփա են կտրե-անցե, կցավա ոտք,— ասաց,— գնա իմ սոլ (չուստ) բեր թող հագնի, մեղք ի տղեն:

Գնացի հալևորի թափ-թափա սոլեր առի բերի դրի մեր տղու առաջ, ասի՝

— Տիմոֆե՛յ, դե հագի՛:

Տիմոֆե՛յ դու, Տիմոֆե՛յ, նայեց սոլերին, ծիծղաց, շատ ծիծղաց, իր կճատ քիթ տրորեց, ասաց՝

— Բա՛բուշկա,— ասաց,— սո՛լ, սո՛լ...— բութ ու ցուցամատ իրար շփեց, ոնց որ աղ ցանի, ու էլի սո՛լ, հա սո՛լ...— մատները շփելուց գլխի ընկանք, որ էս մեր տղեն եղած-չեղած աղ կուզի: Տես է՛, աղ ու հացի ենք նստեցրե տղին, շտապելուց աղ մոռցեր եմ: Գնացի աղ բերի, ցանեց, կերավ վարունգ, կճատ քիթ մեկ էլ տրորեց, ասաց՝ «Խորոշո՛»:

Քիչ հեռու ծաղկածուների վրա իր բարեբեր թևերը պարզել՝ խշշում-հոխորտում էր աշխարհ կշտացնող մի ընկուզենի: Մեր Տիմոֆեյ-տղեն նայեց, նայեց ծառին, գլուխ տարավ բերեց, վեր կացավ տեղից, մոտեցավ, շոյեց ծաղիկները, ծաղկամարգերի եզրերին կանաչին տվող սուսամբարներից պոկեց մի տերև, տրորեց, հոտ քաշեց.

— Օ՛,— ասաց,— օչեն խորոշո...

Դե, մեր հալևորն էլ ի՞նչ ասի, որ լավ լինի: Ի՞նչ պիտի ասեր: Վերցրեց գինով թաս, բեղեր աջ-ձախ սղալեց, զարկեց Տիմոֆեյի թասին, աչք գցեց երկինք, ասաց՝

— Խարաշո՛...

Նրանից ես ու հալևորս քիչ ռուսերեն սովորեցինք:

Լավն էր, իսկ որ խարաշո էր:



# Անտառի շտապ օգնությունը

ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Մի անգամ անտառային տնտեսության Զապորոժիեի մարզային վարչության հասցեով ստացվեց անսովոր փոստային ծանրոց, որի մեջ խնամքով տեղավորված էին... ավելի քան 100 մրջնաբնտանիք:

Մոտավորապես 10 տարի առաջ անտառապահ Ֆ. Խոմենկոն Չերկասսկի մարզի Կրեսելիցկի անտառարդտնտեսությունում ստեղծեց մրջնային բուծարան: Ներկայումս այստեղ կա ավելի քան 10 հազար մրջնաբնտանիք: Այստեղից փոստով մրջյուններ են առաքում հանրապետության բոլոր ծայրերը: Փոստային առաքումների ժամանակ մրջյունների համար հրաշալի պայմաններ են ստեղծված:

Իսկ ինչո՞ւ են մրջյունների նկատմամբ այսպիսի մեծ հոգատարություն ցուցաբերում:

Մրջյունները անտառի բարեկամն են: Նրանք մեծ օգուտ են տալիս բնությանը: Դրանք իսկական բնության սանիտարներն են, որոնք ջանասիրաբար կրում, իրենց ներգետնյա բնակարաններում կուտակում են սատկած միջատներ, վանպայան մնացորդներ, աղտեղություններ, պտուղներ, սերմեր և այլն: Նրանք հատկապես ակտիվ պայքար են մղում վնասատուների դեմ: Այդ ժրաջան միջատները արևածագից մինչև մայրամուտ անդադար աշխատելով, ավելի շատ գործ են կատարում, քան բույսերի պաշտպանության ժամանակակից տեխնիկայով զինված բազմաթիվ ջոկատներ, ավիացիան, տոննաներով թունաքիմիկատները և գրավչանյութերը:

Վաղ առավոտվանից մինչև ուշ մթնշաղ մրջյունները ծառերի կեղևի տակից, տերևների, ծաղիկների, պտուղների վրայից, հողից կրում հեռացնում են վնասատու միջատների թրթուրները, ձվերը, հարսնյակները և այլն: Բացի այդ, մրջյունները մեծ չափով օժանդակում են ծաղիկների փոշոտմանը, փխրեցնում են անտառային հողը, տարածում բույսերի սերմերը:

Այդ է պատճառը, որ ներկայումս ամենուրեք մեծ ուշադրության են արժանացել ու պահպանության տակ են վերցվել մրջյունները: Հատուկ գիտահետազոտական ինստիտուտներ մեր երկրում և արտասահմանում մանրամասն կերպով ուսումնասիրում են մրջյունների կյանքը, նրանց կենսաբանական առանձնահատկությունները, բազմացման ու տարածման հնարավորությունները:

Մրջյունների նկատմամբ մեծ հոգատարություն են ցուցաբերում նաև մեր երկրի պիոներական կազմակերպությունները: Ուկրաինայում, օրինակ, ստեղծվել են դպրոցական անտառտնտեսություններ, որոնց պիոներական ջոկատները իրենց կարևոր խնդիրներից մեկն էլ համարում են մրջյունների և մրջնաբների խնամքն ու պահպանությունը:

# ԱՇՈՒՆ

Նորից աշուն է...
Ծառերից ոսկե շղթա է կախվել,
Դեղին կարոտ է իջել աշխարհին,
Դեղին է մայթը,
Դեղին է քամին:

Երկնքից դեղին անձրև է մաղում,
Զորը լցված է դեղին մշուշով,
Ու կռունկների նրամբ վերջին
Կարծես չվում է աչքերիս միջով:

Դեղին, լուսավոր
Թիթեռնիկներ են իջել սեղանիս,
Ու լուսամփոփիս կապույտ աչքերից
Երգերիս վրա
Կաթում է նորից
Դեղին խնդություն:

Նորից աշուն է...



ՍԻԼՎԱ ԴԱՎԹՅԱՆ

# ՀԱՎԱՍԱՐԱԿՇՌՈՒԹՅՈՒՆ ԿԱՄ ՊԱՅԹՅՈՒՆ

Վ. ՏԱՆԱՍԻՅՉՈՒԿ



## ՇԵՐՏԱՎՈՐ ԲԿԼԻԿԸ

Ամերիկայի ժայռոտ լեռներում տերևակերների ընտանիքից մի բզեզ էր ապրում: Բավական գեղեցիկ էր արտաքինից՝ կարմրագորշ, տասը սև գոլերով: Սնվում էր վայրի մորմի տերևներով և հայտնի էր միայն մասնագետ միջատաբաններին: Բայց ահա անցյալ դարի կեսերին Կոլորադո նահանգում սկսեցին կարտոֆիլ աճեցնել, որը մորմազգի է: Շերտավոր բզեզը փորձեց կարտոֆիլի տերևները, որոնք նրան դուր եկան: Եվ ահա 20 տարվա ընթացքում շերտավոր բկլիկը Միացյալ Նահանգների համարյա ամբողջ արևելքը գրավեց: Նա այնպես հիմնավոր էր ոչնչացնում կարտոֆիլը, որ ֆերմերներն սկըսեցին տատանվել՝ արժե՞ արդյոք կարտոֆիլ աճեցնել:

Առաջին համաշխարհային պատերազմից հետո կարտոֆիլի բեռի հետ բզեզը Ֆրանսիա անցավ: Հյուսիսային թվականներին տարածվեց համարյա ամբողջ Եվրոպայում:

Ճիշտ է, պայքարի պանապան միջոցներով, կոլորադյան բզեզի պատճառած վնասները նշանակալի չափով պակասել են, բայց և այնպես նա մինչև օրս ամենալուրջ վնասատուն է մնում:

Ինչո՞ւմն է բանը, ի՞նչ է կատարվում:

Վայրի մորմը բնության մեջ մեծ պանգվածներով չի աճում, ինչպես կարտոֆիլը, և այդ հանգամանքը բզեզին հնարավորություն չէր տալիս բազմանալու: Բացի այդ, պարզվեց, որ նա բնական թշնամիներ համարյա չունի: Իսկ դա շատ կարևոր գործոն է:

## ՊՐՈՖԵՍՈՐ ԹՐՈՒՎԵԼՈՅԻ ՍԽԱԼԸ



Նա ոչ թե կենսաբան էր, այլ՝ աստղագետ, բայց միջատներ էր ուսումնասիրում: Թթենու շերամի վրա, որի բոժոժներից մետաքս են ստանում, փորձեր էր կատարում: Թրուվելոն ուզում էր մի նոր տեսակ ստեղծել, որի թրթուրները սնվեին ոչ միայն թթենու, այև անտառի սովորական ծառերի տերևներով: Այդ նպատակով նա որոշեց թթենու շերամորդը խաչասերել կենտ շերամորդի հետ, որը Ամերիկայում չկար: Թրուվելոն Եվրոպայից կենտ շերամորդ բերել տվեց և փոքրիկ Մեդֆորդ քաղաքի իր լաբորատորիայում նըրանցից թրթուրներ ստացավ: Նորածինները փետրիկի պես թեթև էին, և քամու հոսանքը նրանցից մի քանիսին պատուհանից դուրս թռցրեց:

Քսան տարի անցավ: Պրոֆեսոր Թրուվելոն մեռավ, նրա անհաջող փորձերը մոռացվեցին: Եվ հանկարծ՝ Միացյալ Նահանգները ցնցվեցին հսկայական ուժի էկոլոգիական պայթյունից:

Սկզբում բազմաթիվ արտասովոր թրթուրները ոչնչացրին Մեդֆորդի շրջակայքի այգիների և անտառների տերևները: Շատակեր, մարմնի վրա երկար մազիկներ, նրանք թունավոր էին և սարսափելի քոր էին առաջացնում:

Եվրոպայում նույնպես կենտ շերամորդի «բռնկումներ» էին լինում: Բայց, որպես կանոն, արագ հանգչում էին: Բայց Ամերիկայում պայթյունը չէր թուլանում, ընդհակառակը, ավելի ուժեղանում էր: Գիտնականները բացատրեցին այդ երևույթը: Եվրոպայում կենտ շերամորդը վաղուց էր տարածված, հետևաբար, ուներ բազմաթիվ թշնամիներ, որոնք ասես «մաքրիչի» դեր էին կատարում և զսպում էին վնասատուի աճը: Իսկ Ամերիկայում այդպիսիք չկային: Ստիպված եղան նրանց թըշնամիներից ներմուծել, որպեսզի գոնե որոշ չափով շտկեն պրոֆեսոր Թրուվելոյի սխալը:

---

Սկիզբը՝ «Պիոներ» 8, 9

# Գիտե՞ք որ

Գիտե՞ք որ

## ԳԼԽԱՎՈՐ ՇՏԱԲԻ ԱՌԱՋԻՆ ՆԿԱՐԻՉԸ



Երբ ասում են «Այվազովսկի», մենք արդեն գիտենք, որ խոսքը իր ողջ կյանքում ծով ու նավեր նկարած նկարչի մասին է: Մեծ ծովանկարիչը ունի վեց հազար միայն յուղաներկով արված նկարներ:

Նա հիանալի գիտեր ծովային գործը և եթե նավ էր նկարում, ապա ամեն բան՝ և՛ կըմախքը, և՛ կայմը, և՛ առագաստները նկարում էր ամենայն ճշտությամբ...

Այդ պատճառով էլ Այվազովսկին նշանակվել էր «Գլխավոր ծովային շտաբի առաջին նկարիչ՝ Ծովային մինիստրության համազգեստ կրելու իրավունքով...»

## ԴԵԼՖԻՆՆԵՐԸ ԾԱՌԱՅՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Գել-Գյու նավահանգստում աշխատանքից ազատել են բոլոր նավաստիներին: Նրանց փոխարեն աշխատանքի են ընդունել... դելֆինների: Հերթապահ դելֆինը դիմավորում է նավին և, շրջանցելով խութերն ու ծանծաղուտները, առաջնորդում է դեպի կանգնատեղ: Դելֆիններն աշխատանքը կատարում են արագ և խնամքով: Իսկ աշխատավարձի դիմաց ստանում են... «ձկան պահածոներ»:

*Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ*



Լույս է տեսնում 1923 թվականից



ՊԻՈՆԵՐ 10. 1978 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ



Շապիկի առաջին էջը՝ ՍԱՐՈ ԿԱԼԵՆՑԻ

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատ. քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՊԵՏՐՈՍՅԱՆ Թ., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր):

«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, №15.

Հասցեն՝ 375015, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15: Հեռախոսներ՝ 56—82—72, 58—08—88, 56—14—96:

ՎՖ 05052: Պատվեր 1667: Տպաքանակ 53700: Տպ. 3 մամ.: Ստորագրված է տպագրության 26.IX 1978 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:






ԲԵՐԴԻ ՀԱՏԱԿԱԳԻԾԸ

ՖՐԱՆՍԻԱՑԻ ԻՆԺԵՆԵՐՆԵՐԻ՝ ԶԻՆՎՈՐԱԿԱՆ ԱՐՎԵՍՏԻ ԲՈԼՈՐ ԿԱՆՈՆՆԵՐՈՎ ԱՄՐԱՑՎԱԾ ԵՐԵՎԱՆԻ ԲԵՐԴԸ ՀԱՄԱՐՎՈՒՄ ԷՐ ԱՆԱՌԻԿ։ ՍԱԿԱՅՆ ՆԱ ԷԼ ՉԴԻՄԱՑԱՎ ՌՈՒՍԱԿԱՆ ԶՈՐՔԵՐԻ ԱՆԿԱՍԵԼԻ, ՍՐԸՆԹԱՑ ԳՐՈՀԻՆ։ 1827 ԹՎԱԿԱՆԻ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 1-Ի ԱՌԱՎՈՏՅԱՆ ՌՈՒՍԱԿԱՆ ԶՈՐՔԵՐԸ ԽՈՐՏԱԿԵԼՈՎ ՀՅՈՒՍԻՍԱՅԻՆ ԴԱՐՊԱՍԸ, ԳՐԱՎԵՑԻՆ ԵՐԵՎԱՆԻ ՆՇԱՆԱՎՈՐ ԲԵՐԴԸ։ ԽԱՆԻ ԿԱՅԱԶՈՐԸ, ՈՐ ԲԱՂԿԱՑԱԾ ԷՐ 4000 ՍԱՐԲԱԶՆԵՐԻՑ, ԱՆՁՆԱՏՈՒՐ ԵՂԱՎ։ ԳԵՐԻ ՎԵՐՑՎԵՑԻՆ ՀԱՍԱՆ ԽԱՆԸ ԵՎ 205 ԲԱՐՁՐԱՍՏԻՃԱՆ ՊԱՇՏՈՆՅԱՆԵՐ, ԳՐԱՎՎԵՑ ՄԵԾ ՔԱՆԱԿՈՒԹՅԱՄԲ ՌԱԶՄԱՎԱՐ։


Վ. Մոշկով — ԵՐԵՎԱՆԻ ԲԵՐԴԻ ԱՌՈՒՄԸ